

# ՇԵՓՈՐԱՀԱՐԸ

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Բացվում է լույսը...
Ճերմակ վրաններ՝ կանաչ անտառում:
Տեսե՛ք առաջինն ո՞վ է արթնանում՝
Շեփորահարը:
Ելնող արևին հայացքը հառում,
Կանգնում է զգաստ, շեփորահարում:
Թվում է նրան՝
Կանչը լսում է ամբողջ աշխարհը:
— Մարդի՛կ, բարի լո՛ւյս,— ողջունում է նա,—
Թող որ աշխարհը խաղաղ արթնանա:—
Ու կանչում է նա, և արևն ասես
Ծագում է հենց իր շեփորի միջից:
Սփռում շողերը հնչյունների պես,
Ցոլում է մանկանց աչքերում վճիտ,
Եվ խորն անտառի կանաչ թավուտում
Շեփորահարի խոսքը հաստատող
Պիոներական քայլերգն է թնդում...

## ՃԱՄԲԱՐՆԵՐՈՒՄ





Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ

# ՆԱ-
# ՄԱԿ

ԼՅՈՒԴՄԻԼԱ ՄԱՏՎԵԵՎԱ



Անտոնը ճամբարից նամակ էր գրել.

«Սիրելի՛ մայրիկ ու հայրիկ: Ես լավ եմ: Մորին հասել է: Մենք գնացել էինք մորի հավաքելու: Տղաներն ասում են, որ շուտով հաղարջին էլ կհասնի: Մեզ լավ են կերակրում, ինչ տալիս են՝ ես բոլորն ուտում եմ: Մեզ ավտոյով էին տարել, այնտեղ մենք ճագարներ տեսանք: Ճագարներն ինձ դուր եկան: Տանե՞ք ինձ այստեղից, թե չէ, կփախչե՞մ»:

Մայրիկն ու հայրիկը լուռ էին: Հետո հայրիկն ասաց.

— Ոչ էլ կփախչի: Ո՞ւր պիտի փախչի:

— Դու, ի՞նչ է, Անտոնին չգիտե՞ս, — հարցրեց մայրիկը: Նրա ձայնի մեջ արցունքներ հնչեցին:

Մայրիկը փոստ գնաց ու Անտոնին հեռագիր ուղարկեց. «Շաբաթ օրը կգանք: Համբուրում եմ: Մայրիկ»:

Ամռան հենց սկզբին տատիկը պատրաստվում էր գնալ իր ընկերուհու՝ Լյուդմիլա Ալեքսանդրովնայի մոտ՝ Նիկոլսկոյե ամառանոցը:

— Երեխաներին հետս կտանեմ: Այնտեղ հրաշալի միկրոկլիմա է:

Անտոնը հրաժարվել էր:

— Ավելի լավ է ճամբար գնամ:

— Ի՞նչ կա որ, — ասել էր հայրիկը, — թող գնա: Տղան շուտով տասը տարեկան է դառնում և շարունակ տատի հետ է:

Ճամբարը Անտոնին դուր եկավ: Մարգագետնում սուլում էին սարյակները: Հանգստի ժամին, եթե քունը չէր տանում, ջոկատավար Վիկան թույլ էր տալիս գիրք կարդալ: Երեկոյան տողանն անցնում էր արագ, և մոծակները չէին հասցնում կծոտել մերկ ոտքերը: Բայց գլխավորը այս բոլորը չէր: Գլխավորը Նատաշան էր: Իհարկե, ափսոս, որ Անտոնը հինգերորդ ջոկատում էր, իսկ նա՝ առաջին: Ափսոս, որ ինքը տասը տարեկան է, իսկ նա՝ տասնհինգ: Բայց Անտոնը նրան տեսնում է ամեն օր: Նատաշան թեթև է, թեթև քայլք, թեթև ծիծաղ: Նա վազում է Անտոնի կողքով ու խառնում նրա մազերը: Եվ Անտոնը միանգամից թեթևություն է զգում:

Կրտսերների ջոկատը մի ամբողջ ժամ առաջ է պառկում քնելու: Իսկ ավագները բանավեճեր ու պարեր են ունենում: Անտոնը սկզբում նեղանում էր: Բայց Նատաշան սկսեց մոտենալ նրա ննջարանի պատուհանին ու ասել. «Բարի գիշեր, Անտո՛ն»: Եվ նա այլևս չէր նեղանում:

Անտոնը կանգնած է տաղավարից քիչ հեռու, իսկ տաղավարում Նատաշան Նորայի ու Ասյայի հետ անուշ երգում է. «Ակնթարթ, ակնթարթ, ակնթարթ»: Անտոնն էլ է սիրում այս երգը: Երեկո է, ճնճղուկները ծլվլում են քնելուց առաջ: Աղջիկները երգում են կամացուկ ու քնքուշ, և երգը ասվում է ոչ թե հետախույզի վտանգավոր կյանքի մասին, այլ այս խոնավ երեկոյի ու լճակի վրա կանգնած մշուշի պես ինչ-որ թախծոտ ու փաղաքուշ բանի:

Անտոնը Նատաշայի հետ ծանոթացավ ձմռանը:

Նա նստած էր սանդուղքի տակ, ամենամութ անկյունում: Սանդղավանդակ մտավ կարճ վերարկուով բարձրահասակ մի աղջիկ:

— Օ՜յ, ո՞վ կա այստեղ, — ասաց նա:

— Մի՛ վախենա, ես եմ, — արձագանքեց Անտոնը, — հարևան տանն եմ ապրում:

Աղջիկը կռացավ ու սկսեց դիտել նրան: Անտոնը նստած էր՝ մի ոտքը տակը ծալած, մյուսի ծունկը ծնոտին հասցրած:

— Դո՛ւրս եկ, — ասաց Նատաշան, — դո՛ւրս եկ, դո՛ւրս:

Անտոնը դուրս չեկավ:

— Ես կորցրել եմ պայուսակս: Սա արդեն երկրորդն է: Ես տուն չեմ գնա ոչ մի դեպքում, այսպես էլ իմացիր: Անունդ ի՞նչ է:

— Նատաշա: Այստե՞ղ ես ապրելու: Ամբողջ կյա՞նքդ:

Անտոնը դուրս եկավ: Նրա այտերը կեղտոտ էին: Նատաշան բռնեց նրա ձեռքից:

— Գնանք մեր տուն, — ասաց նա, — թեյ կխմենք:

Նատաշայի ձեռքը բարակ էր և ուժեղ: Նրանք բարձրանում էին երրորդ հարկ, Նատաշան՝ առջևից, Անտոնը մի փոքր նրանից հետ: Անտոնը բռնել էր Նատաշայի ձեռքը և, կարծես, մի քիչ դիմադրում էր, բայց, այնուամենայնիվ գնում էր:



— Ի՞նչ թեթևամիտ տարօրինակ կան աշխարհում երկրո՞րդ պայուսակը։ Ես իններորդ դասարանում եմ սովորում և դեռ ոչ մի պայուսակ չեմ կորցրել։ Իսկ դու, տես, թե ինչեր ես անում։

— Ես ի՞նչ գիտեի, որ այդպես կլինի,— բամբ ձայնով խոսում էր Անտոնը, հո դիտմամբ չարի՞։

Նրանք բնակարան մտան։ Խոհանոցում կամացուկ երգում էր ռադիոընդունիչը։ Սենյակի պատից նկար էր կախված՝ վառ-կարմիր ձիու վրա նստած էր խոշոր աչքերով նիհար մի տղեկ։

— Կարմիր ձի չի լինում,— ասաց Անտոնը և հանկարծ նկատեց, որ նկարի տղան մերկ է։ Անտոնը հայացքը հեռացրեց և աշխատում էր այլևս չնայել նկարին։

— Լվացվի՛ր,— ասաց Նատաշան,— հիմա թեյ կդնեմ։

Տանը նա մազերին կապույտ ժապավեն կապեց։

Անտոնը խոհանոցում, Նատաշայի դիմաց նստած, վինեգրետ ու կոտլետ էր ուտում ու պատմում էր, թե այդ բոլորը ինչպես պատահեց։

Դպրոցից տուն վերադառնալիս փողոցի հակառակ կողմում տեսել էր իր երաժշտության ուսուցչուհուն՝ Օլգա Արնոլդովնային։ Ուսուցչուհին իր խոշոր դեմքը թաքցրել էր մորթե օձիքի մեջ, իսկ օձիքից վեր երևում էին նրա բաց գույնի, դուրս պրծած աչքերը։ Անտոնը գիտեր, որ ուսուցչուհին իր մոտ է գալիս, որովհետև այսօր ինքը երաժշտության դաս ունի և, ուրեմն, այսօր նա նորից կխփի Անտոնի ձեռքերին ու չոր ձայնով կասի.

— Սխալ է։ Սկսիր։ Մի անգամ էլ։

Նա երկար մնաց նստած այնտեղ, մինչև Օլգա Արնոլդովնան բարձրացավ նրանց տուն, սեղմեց դատարկ բնակարանի զանգի կոճակը, հետո վար իջավ և համառորեն արեց մայթի երկայնքով։ Երևի կարծում էր, թե Անտոնը շուտով կգա։ Անտոնը սառեց, պպված դիրքից հոգնեց, իսկ նա չէր հեռանում։ Եվ Անտոնը վճռեց կամացուկ սողալ բակ, ուր տղաները հոկեյ էին խաղում, և փողոցով մեկ լսվում էր, թե ինչպես է Կոսկան գոռում. «Անարդա՞ր է։ Անարդա՞ր է»։

Նա պայուսակը թաքցրեց տախտակների մեջ և սպասեց։ Վերջապես երաժշտության ուսուցչուհին մոտեցավ կրկեսի հայտագրին ու սկսեց կարդալ։ Անտոնը կամաց բակ անցավ, հետո տարվեց խաղով։ Անտոնը բոլորովին մոռացել էր Օլգա Արնոլդովնային։ Մեկ էլ Կոսկան թե.

— Տափօղակս տվե՛ք, տուն եմ գնում։

Միայն այդ ժամանակ Անտոնը նկատեց, որ արդեն մթնում է։ Նա անկյունից դուրս նայեց, ուսուցչուհին, իհարկե, գնացել էր։ Անտոնն ուզում էր վերցնել պայուսակն ու տուն վազել, բայց տախտակների ետևում պայուսակ չկար։

— Երևի մեկնումեկը թռցրել է,— հառաչեց Անտոնը։

Նատաշան հարցրեց.

— Գուցե դու վա՞տ ես փնտրել։

— Լավ եմ փնտրել։ Բոլոր տախտակները շուռ եմ տվել։

Նատաշան նրան մոտեցրեց խնձորի ջեմով լի ամանը։

— Անտո՛ն, գուցե զանգահարենք ձեր տուն։ Այնտեղ, երևի, անհանգստանո՞ւմ են։

— Ինձ համար երբեք չեն անհանգստանում,— ասաց Անտոնը,— Յուրա քեռին ասում է, որ ես պետք է որպես իսկական տղամարդ մեծանամ։ Իսկական տղամարդիկ գնում են, ուր կամենան։

Յուրա քեռին իսկապես էլ այդպես է ասում։ Անտոնն աշխատեց պատկերացնել, թե ինչ է կատարվում հիմա իրենց տանը։ Մայրիկն, իհարկե, արդեն մի քանի անգամ պատշգամբ է ելել ու դեպի մութ բակը գոռացել. «Անտո՜ն, Անտո՜ն»։ Եվ Նադյան էլ դուրս է վազել նրան փնտրելու։ Նադյան արդեն բոլոր դասերը սովորած կլինի, երրորդ դասարանում քիչ դաս են տալիս, այնպես չէ, ինչպես Անտոնենց՝ չորրորդում։ Նադյայի համար լավ է։ Նա պայուսակը չի կորցրել, նրան երաժշտություն չեն սովորեցնում։ Նա երջանիկ է՝ երաժշտական լսողություն չունի։ Իսկ հայրիկը, երևի, քայլում է սենյակում ու դժբախտ ձայնով ասում.

— Վե՛րջ տվեք հուզվելուն։ Ով գիտե, ինչ գործեր ունի տղան։ Ընկերոջ մոտ է մնացել։

Բայց հայրիկի աչքերը անհանգիստ են, նա անընդհատ ժամացույցին է նայում։ Իսկ եթե հանկարծ հայրիկն արդեն միլիցիա է հայտնե՞լ։ Եվ հացի խանութի մոտ վաղը հայտարարություն կհայտնվի. «Կորել է մի տղա, անունը՝ Անտոն։ Ինը տարեկան, միջահասակ, դպրոցական համազգեստով, դեմքը երկարավուն, աչքերը շագանակագույն, մազերը թեթև գանգուր, չափսը երեսունչորս»։ Անտոնը միշտ էլ սիրում էր դիտել ապակու տակ գտնվող այս տախտակի վրայի





լուսանկարները։ Դրանցից մի քանիսը վտանգավոր հանցագործներ էին քառակուսի ծնոտներով ու նեղ ճակատներով։ Մյուսների վրա մեղք չունեցող մարդիկ էին, որոնք ուղղակի կորել էին։ Մի անգամ մի անծանոթ տարեց կին ասաց Անտոնին.

— Տե՛ս, բալա՛ս, լսի՛ր մայրիկիդ։ Թե չէ՝ քե՛զ էլ մի օր կախ կտան այստեղից։

Նատաշան վեր կացավ, մոտեցավ Անտոնին ու խառնեց նրա մազերը։

— Ի՞նչ պատահեց քեզ։ Մի՛ վշտանա։ Տուն կըգնա՞ս։

— Ո՛չ մի դեպքում,— ասաց Անտոնը։

— Այստե՞ղ ես ապրելու,— ուրախ հարցրեց Նատաշան։— Ամբողջ կյա՞նքդ։

Անտոնը հառաչեց, վեր կացավ սեղանից ու բաճկոնը հագավ։ Նա կանգնել էր միջանցքում և դեպի սանդուղքը չէր գնում։

— Ա՛ռ մի կոնֆետ էլ,— ասաց Նատաշան։

— Չեմ ուզում,— շրջվեց Անտոնն ու նայեց պանգի տուփի վրա փակցրած փայլուն գավաթիկին։— Ցըտեսություն։

— Անտո՛ն, որտե՞ղ է աշխատում մայրդ։

— Հրատարակչությունում։ Սրբագրիչ է, գրքերի սխալներն է ստուգում։

— Իմ մայրն էլ է հրատարակչությունում,— ասաց Նատաշան։— Ես հիմա հիշեցի, մայրս քո մասին պատմել է։ Էլի՛ արի մեր տուն։

Անտոնը փողոց ելավ։ Ձյուն էր մաղում, թեթև ու նոսր, ձմեռուկի հոտ էր գալիս։ Լապտերի տակ կանգնած էր Նադյան։ Նա վերարկուով էր, անգլխարկ, ձյան փաթիլները փայլում էին նրա մազերի մեջ։

— Անտո՛ն։ Որտե՞ղ ես թափառում,— խստորեն ասաց Նադյան։— Մի մորաքույր բերեց քո պայուսակը, մայրիկն իսկույն հասկացավ, որ դու թաքնվում ես և ինձ ուղարկեց քեզ փնտրելու։

— Ի՞նչ մորաքույր,— դեպի Նադյան նետվեց Անտոնը։

— Նարնջագույն ժիլետով մի բանվորուհի։ Նրանք ճանապարհին են նորոգում, ասֆալտը ծածկում են տախտակներով։ Ասաց, որ պայուսակը տախտակների ետևում էր, իսկ տերը չկար։ Նա բացել է պայուսակը և տետրակներից իմացել է, թե ումն է։ Իսկ հետո տըղաներին է հարցրել, թե որտեղ է ապրում Անտոնը։

— Մայրիկն ի՞նչ ասաց,— հարցրեց Անտոնն ու ականջակալներով գլխարկը հագցրեց Նադյայի գլխին։

— Մայրի՞կը։ Սկզբում ոչինչ չասաց։ Հետո ասաց. «Այս Անտոնի հետ մենք դեռ շատ կտանջվենք»։ Իսկ հայրիկն ասաց. «Նա թեթևամիտ բնավորություն ունի, քո ցեղին է քաշել։ Վերցնենք թեկուզ քո եղբայր Յուրային»։ Արի տո՛ւն գնանք, Անտո՛ն, նրանք արդեն չեն կռվում։

Մի քանի օրից Անտոնը հանդիպեց Նատաշային։ Նա հեռվից ճանաչեց Նատաշայի մոխրագույն վերարկուն ու գործած կարմիր գլխարկը։ Նատաշան գալիս էր, ձեռքի փայտիկը ցանկապատին քսելով։ Դրանից կրնկոցուն և ուրախ ձայն էր դուրս գալիս. «Թըկ-թըկ-թըկ»։ Անտոնը քայլեց նրա կողքով, բարձրացրեց գլուխն ու նայեց դեմքին։

Հետո Անտոնն ասաց.

— Նատա՛շա, իսկ մեր Սլավկա Չելնոկովի եղբայրը՝ Սաշան ձեր դասարանում է սովորում։ Ես նրան ճանաչում եմ։

— Պա՛հ, ի՞նչ նշանավոր դեմք է,— ասաց Նատաշան՝ դուրս ցցելով վարի շրթունքը։— Վատ սովորող ու խուլիգան է։ Իսկ Մորգունովան այսօր թույլ չտվեց, որ երկրաչափությունն իրենից արտագրեմ։ Այդ Մորգունովան էլ միշտ ուզում է աչքի ընկնել։

— Սաշա Չելնոկովը մեր փողոցի ամենալավ ֆուտբոլ խաղացողն է։ Եվ գիտե՞ս ինչ աղավնիներ ունի։

Անտոնն ուզում է, որ Նատաշան չհամաձայնի իր հետ ու պաշտպանի Սաշային։ Եվ նա ասում է.

— Խուլիգան է և աղավնի թռցնող։ Նրա ինտելեկտով միայն ֆուտբոլ կարելի է խաղալ։

Անտոնն արդեն բոլորովին ուրախացավ։ Նա չըհասկացավ, թե ինչ է նշանակում «ինտելեկտը»-ը և ասաց.

— Այո՛, Նատա՛շա, միայն ֆուտբոլ կարելի է խաղալ։ Եվ ուրիշ ոչինչ։

Նրանք բակ մտան, այնտեղ արև չկար, կապույտ ստվերներն էին ընկել բարձր սպիտակ աշտարակ-տան ճերմակ պատին։ Արագավազ ամպեր էին լողում, իսկ երկինքը պայծառ էր։ Պատշգամբում Նադյան էր կանգնած։ Նա բղավեց.

— Անտո՛ն, տո՛ւն արի։ Ապուրը պաղե՛ց։

— Ցտեսությո՛ւն, Անտո՛ն,— ասաց Նատաշան,— ամռանը ես քեզ թղթե ֆռռան սարքել կսովորեցնեմ։ Երբ ես մայրիկի հետ հանգստանում էի Վոլգայի ափին, այնտեղ մի մարդ կար, քեռի Պետյան։ Նա այնպիսի ֆռռաններ էր սարքում, որ երկնքից բարձր էին թռչում։

— Կսովորեցնե՞ս,— Անտոնը նորից բարձրացրեց գլուխը և երկա՛ր նայեց երկնքին,— միայն թե չմոռանաս։

Ամառը շատ շուտ եկավ։ Մայրիկն ասաց.

— Ես ուրախ եմ, որ Նատաշան էլ է ճամբար գալիս, աչք կպահի վրադ։

Անտոնը պատասխանեց.

— Ես էլ եմ ուրախ, որ Նատաշան էլ է գալիս։

Երբ ավտոբուսները մեկնելու էին պատրաստվում, Նատաշայի մայրիկը կանգնած էր Անտոնի մայրիկի կողքին։ Մայրիկները ձեռքով հրաժեշտի նշան էին անում ու բղավում.

— Գրի՛ր, նամա՛կ գրիր։

— Հեռուները չլողա՛ս։

— Արևի տակ շատ չմնա՛ս:

— Չմրսե՛ս:

Մայրիկներն անհանգստանում էին, իսկ ավտոբուսում նստած երեխաներն արդեն նրանց հետ չէին: Նրանք ճամբար էին գնում:

Նատաշան երեկ ասել էր Անտոնին.

— Ես վերջին անգամ եմ ճամբար գնում: Չեմ էլ պատկերացնում, որ կարող է երբևէ նորից ճամբար գնալ ուզենամ ու ինձ ասեն. «Չի կարելի: Ճամբարը երեխաների համար է: Իսկ դուք, Նատա՛շա, արդեն մեծ եք»: Ծիծաղելի է, չէ՞:

— Իհարկե, ծիծաղելի է,— ասել էր Անտոնը: Եվ չգիտես ինչու, տխրել էր:

Իսկ հետո, երբ ավտոբուսները մեկը մյուսի ետևից գնացին քաղաքի միջով և փողհարը պատուհանից դուրս հանելով փայլուն փողը, սկսեց նվագել, Անտոնն ուրախացավ: Ահա նրանք գնում են բոլորը միասին՝ կարճ կտրած մազերով, սպիտակ շապիկներով ու բլուզներով, համերաշխ երեխաները: Իսկ ավտոբուսի բաց պատուհանից ներխուժող քամուց փողփողում են վզկապները:

Պատուհանից այն կողմ ետ են փախչում գույնզգույն վարագույրներով սպիտակ տներն ու «Ապրանքներ փոքրիկների համար» խանութը:

Ճամբարում պարզվեց, որ Անտոնն արդեն մի քիչ լողալ գիտի՝ նա առանց հատակից կառչելու երևի մի տասը մետր լողում էր: Անտոնը բղավեց.

— Նատա՛շա, տե՛ս:

— Ապրե՛ս,— բղավեց Նատաշան:

Նա նստած էր ափին, կաթիլները գլորվում էին նրա մուգ մազերից և արևակեզ ուսերի վրա չորանում:

— Ապրե՛ս, Անտո՛ն:

— Ես սկել էլ գիտեմ: Նայի՛ր:

— Անտո՛ն, չհամարձակվես սկել,— ասաց ջոկատավար Վիկան:— Դուրս կհանեմ ջրից: Ես վախենում եմ, երբ դուք սկում եք: Չէ՞ որ ես անընդհատ ձեզ հաշվում եմ:

— Մի՛ սկիր,— բղավեց Նատաշան,— ես առանց այն էլ գիտեմ, որ դու կարող ես սկել:

Ինչ լավ է, որ գետի ջուրը սով է ու փայլուն: Լավ է, որ արևը տաքացրել է ափի ավազն ու խոտը: Լավ է, որ ջոկատավար Վիկան բոլորովին բարկացկոտ չէ: Իսկ ամենալավն այն է, որ ափին նստած է Նատաշան և լուսավոր, կլոր կաթիլները գլորվում են նրա ուսերից:

Ողջ ջոկատն ու ջոկատավար Վիկան մորի էին հավաքում լուսավոր բացատում: Ամենախոշոր, մուգկարմիր պտուղները կեչիների կոճղերի մոտ էին լինում: Մինչև պոկում ես մեկը, տեսնում ես հինգ, նույնիսկ տասը ուրիշը: Անտոնը սկզբում ամեն մորին առանձին էր ուտում: Հետո որոշեց հավաքել ափի մեջ, ինչպես ջոկատավար Վիկան: Եթե մորին բերանդ ես լցնում բերանդ, շատ ավելի համեղ է: Հետո Անտոնը նկատեց, որ ամենափոքրիկ աղջիկը՝ Լիդա Տիխոմիրովան, պտուղները շարում է ցողունի վրա:

— Ինչի համար,— հարցրեց Անտոնը:

— Լարիսա Ֆուֆաևան՝ հիվանդանոցում պառկածը, վերին շնչառական ուղիների բորբոքում ունի: Կարծում ես, նա պտուղ չի՞ ուզում: Նա էլ է կենդանի մարդ:

— Իհա՛րկե,— ասաց Անտոնը,— նա էլ է կենդանի մարդ: Նատաշան էլ է կենդանի մարդ:

Անտոնը քաղեց ամենաերկար ցողունը և սկսեց մորի շարել վրան: Կարմիր, փայլփլուն ուլունքաշար եղավ:

Լիդան փնթփնթաց.

— Նատա՛շա, հա Նատա՛շա: Հենց միայն Նատաշային գիտես:

— Զա՛յնդ,— ասաց Անտոնը հանգիստ,— թե չէ էնպես կհասցնեմ, կթռչես:

— Ինչո՞ւ ես բարկանում,— հարցրեց ջոկատավար Վիկան: Նա մոտեցավ ու կանգնեց Լիդայի ու Անտոնի միջև:— Այդ էր պակաս, որ ջոկատում կռիվ էլ լինի:

— Բա ինչո՞ւ է սա...— ասաց Անտոնն ու հեռացավ:

Վերադառնալով ճամբար, Անտոնը գտավ Նատաշային: Նա նստած էր տաղավարում և «Ապուշը» ծիծաղելի վերնագրով մի հաստ գիրք էր կարդում:

— Տե՛ս, ի՛նչ եմ բերել քեզ համար,— հեռվից գոռաց Անտոնը:

Նա մի կողմ դրեց գիրքը, վերցրեց պտուղը, իսկույն չսկսեց ուտել, այլ երկար նայեց ու հետո ասաց.





Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ի՞նչ սիրուն պտղահատեր են: Արի երկուսո՛վ ուտենք, դու և ես:

Հետո նա նստել էր նստարանին, Նատաշայի կողքին ու տարուբերում էր ոտքերը: Ոտքերը չէին հասնում գետնին: Նատաշան խառնեց նրա մազերը:

Անտո՛ն, բլուզդ թարս ես հագել:

Գիտեմ, գիտմամբ եմ այդպես հագել: Որպեսզի բլուզս չկեղտոտվի: Երեկոյան տողանի ժամանակ շըրջում եմ՝ նորից մաքուր է:

Նատաշան, չգիտես ինչու՝ ծիծաղեց.

Համա՞ թե զվարթ ես: Հանգստի ժամից հետո բլուզդ ինձ կտաս, իսկ ինքդ ուրիշը կհագնես:

Երեկոյան Անտոնը տեսավ, որ իր բլուզն ու գուլպաները Նատաշայի սրահի կողքին չորանում են պարանի վրա:

Ճամբարում ամենալավ ժամանակը ետճաշյա թեյից հետո է: Դեռ տաք է, բայց շոգ չէ: Եվ շտապելու տեղ չկա: Իսկ առջևը երկար երեկո է, կինո, համերգ կամ մի ուրիշ հետաքրքիր բան:

Անտոնը գալիս է շավիղով, ձեռքին՝ ծրար ու մի թերթ թուղթ: Նա որոշել է նամակ գրել տուն: Նա նստած է տաղավարում, տաղավարի մեջտեղում փայտե սեղան է, նրա շուրջը՝ նեղ նստարաններ: Անտոնը արմունկները դրեց սեղանին և սկսեց նայել շամբուկի թփերին: Ճերմակ ծաղիկները ծանր կախված են ճյուղերից, նրանք սուր հոտ ունեն: Տաղավարի կողքին Լարիսա Յուֆաևան պարան է թռնում: Ուրեմն նրա վերին շնչառական ուղիների բորբոքումն արդեն անցել է: Նա երկար-երկար է թռչկոտում, պարանն ուրախ շխկում է սալարկած շավիղի վրա:

Անտոնն անհանգիստ շարժվեց տեղում, ավելի հարմար նստեց և գրեց առաջին տողը. «Ողջո՜ւյն, սիրելի՛ մայրիկ ու հայրիկ»: Նա ուզեց ավելացնել «Նադյա», բայց հիշեց, որ Նադյան տանը չէ, այլ տատիկի հետ՝ առողջարանում: Տատիկը գնալուց առաջ ասել էր, որ երեկոները Նադյային պետք է հում կաթ խմեցնի, որովհետև Նադյան նիհար է: Անտոնը հում կաթ չի սիրում, և Նադյան էլ չի սիրում: Նա, միևնույն է, չի խմի. Նադյան այնպիսին է՝ չուզեց, ուրեմն չեք կարող ստիպել:

«Մորին արդեն հասել է», գրեց Անտոնը: Հետո գրեց ճագարների մասին ու նորից գրիչը վար դրեց, մտածմունքների մեջ ընկավ: Նրանք գնացել էին սովխոզ, քաղաքից սննդամթերք տանող բեռնատար մեքենայով: Թափքի վրա բրեզենտե տանիք էր, ներսը մութ էր և ուրախ: Նրանք նստած էին ամբողջ ջոկատով ուս-ուսի կիպ կպած: Երբ մեքենան թափ էր տալիս, կարելի էր ծղրտալ: Տեղ հասնելուն պես ջոկատավար Վիկան սկսեց բոլորին մեկ-մեկ իջեցնել մեքենայից: Անտոնը չթողեց իրեն իջեցնել, ինքը թռավ փափուկ փոշու մեջ: Վիկան ասաց.

Ի՜նչ ճարպիկն ես, Անտո՛ն:

Ճագարները նստած էին վանդակներում, նրանք սպիտակ էին ու գորշ, կարմիր, լոռամրգի նման աչքերով: Մի ճագարը սև էր, այտին՝ սպիտակ բիծ: Երկար մետաքսանման ականջները վարդագույն լույս էին թափանցում: Կենդանաբույծ Վերա Եվգրաֆովնան բացատրեց.

Ճագարները մարդկանց նման են: Սիրում են ուշադրություն ու փաղաքշանք:

Անտոնը մատը մտցրեց վանդակի մեջ ու շոյեց ամենափոքրիկ գորշ ճագարիկին: Նրա մորթին տաքուկ էր: Վերա Եվգրաֆովնան նկատեց ու ասաց.

— Այդ մեկը պետք չէ անել:

«Ճագարներն ինձ դուր եկան»,—գրեց Անտոնն իր նամակում: Նա սկսեց պատկերացնել, թե ինչպես փոստատարը կբերի նամակն ու կգցի արկղի մեջ: Իսկ հետո հայրիկը կարթնանա և կիջնի թերթ բերելու ու կհանի Աբխազիայի ժողովրդական բանաստեղծ Դ. Ի. Գուլիայի դիմանկարով սպիտակ ծրարը: «Անտոնից նամակ»,—կուրախանա հայրիկը: Իսկ հետո կբարձրանա ու ողջ բնակարանով մեկ կբղավի. «Անտոնից նամա՜կ»:

Մայրիկը վազելով կգա խոհանոցից, նրանք կնստեն բազմոցին, կկարդան և կասեն՝ ի՜նչ շնորհքովն է Անտոնը, նստել ու նամակ է գրել: Տողերը մի քիչ ծուռն են գնում, բայց դրա պատճառն այն է, որ թուղթն անտող է: Հետո մայրիկը կասի.

— Սխալները շատ են: Ես բնատուր գրագետ եմ, իսկ երեխաներս սխալներով են գրում: Դա ինձ վշտացնում է:

Իսկ հայրիկը կասի.

— Դատարկ բաներ են: Գլխավորն այն է, որ տղային դուր է գալիս կոլեկտիվում լինելը: Իսկ դու ասում էիր նա կոնտակտի զգացումից զուրկ է: Նա իմ որդին է և կարողանում է մարդկանց հետ լեզու գտնել:

Երկար, դարչնագույն թռչունը նստեց շամբուկին, թուփը խոնարհվեց մինչև գետին, իսկ թռչունը շրջեց գլուխն ու կողքից նայեց Անտոնին, կարծես միտք էր անում, պե՞տք է նրանից վախենալ, թե՞ պետք չէ:

Երևի որոշեց, որ պետք չէ և մնաց նստած:

Եվ այստեղ Անտոնը լսեց Նատաշայի ձայնը.

— Ա՜սյա, չգիտե՞ս ուր է Անտոնը:

— Անտո՜նը: Ի՞նչ իմանամ: Եվ ընդհանրապես, դու էլ, Նատա՜շկա, ընկե՞ր ես գտել քեզ համար:

Անտոնը սառեց, սիրտը փոքրացավ, կծկվեց, քար կտրեց:

— Անտո՜նը:— Մի քիչ երկարացնելով ասաց Նատաշան:— Մեր մայրերը միասին են աշխատում: Ես նրա մորը խոստացել եմ աչք պահել վրան: Չէ՞ որ նա փոքր է, բոլորովին երեխա է: Նա ինձ ի՞նչ ընկեր:

Նատաշան ու Ասյան անցան: Անտոնը շարունակում էր նստած մնալ, սիրտը դեռ մնում էր կծկված:

Ամեն առավոտ Նատաշան ասում է.

— Քաշովիդ կերա՞ր: Մինչև տակը կե՞ր:

Եվ նա ուտում է:

Ընթրիքից հետո հարցնում է.

— Ոտքերդ չե՞ս թրջել:

Երեկոյան գալիս է երկնագույն տնակի պատուհանի մոտ ու ասում է.

— Անտո՛ն, բարի գիշեր:

Եվ կոնֆետ է հյուրասիրում, որ իրենն տնից են ուղարկել: Նրան ոչ մի կոնֆետ էլ պետք չէ: Յոլա կգնա առանց կոնֆետի: Եվ Անտոնը թղթի ցածում գրեց. «Տարեք ինձ այստեղից, թե չէ կփախչեմ»: Նա վազեց դեպի դարպասը և նամակը գցեց փոստարկղի մեջ: Եթե այդպես է, ուրեմն, այդպես է: Մայրը խնդրել է հետևել, նա դեռ բոլորովին փոքրիկ է:

Երեկոյան Անտոնը բոլորի հետ միասին նստած էր խարույկի մոտ ու նայում էր սև երկնքի ֆոնի վրա բոցկլտացող շիկացած սպիտակ կայծերին: Բայանահար Ժոզը վալս էր նվագում ու ոտքով գետինը դոփում: Երկրորդ ջոկատի տղաները բուրգ էին ցուցադրում. երկու մեծ տղա գետնին էին կանգնած, երկու ավելի փոքրը նրանց ուսերին, իսկ երրորդը՝ ամենափոքրը՝ Սերյոժկան, սրանց ուսերին: Սերյոժկան կարմիր դրոշակ էր բռնել: Լայնաթիկունք ֆիզկուլտուրնիկ Վալերին՝ պիրկ ձգված ֆուտբոլկա հագին, ցածրաձայն չափ էր տալիս նրանց.

— Մե՛կ: Երկո՛ւ: Երե՛ք: Չո՛րս:

Բոլորը ծափահարեցին, իսկ բուրգ կազմած տղաները միահամուռ գոռացին. «Ֆիզկուլտ-ողջո՜ւյն»:

Հետո փոքրիկ Լիդան «Թաթարուհի» պարը պարեց: Լիդան քանդել էր իր հյուսերը և բազմաթիվ փոքր ու բարակ հյուսեր արել: Նա պտտվում էր խարույկի շուրջը, թեթևակի ձևով նստում էր խոտին, նորից բարձրանում, ձեռքերով սահուն շարժումներ անում: Կրակը լուսավորում էր նրա դեմքը մեկ մի կողքից, մեկ՝ մյուս:

Անտոնն ամեն բան տեսնում էր, բայց մտքում բոլորովին ուրիշ բան էր. «Կգնամ: Կգնամ և վերջ»:

Կողքին Նատաշան հայտնվեց.

— Ինչո՞ւ ես տխուր: Գլուխդ չի՞ ցավում: Ոտքերդ չե՞ս թրջել:

Նա տաք ձեռքը քսեց Անտոնի ծոծրակին՝ ներքևից վերև, ինչպես միշտ, ցցեց մազերը: Անտոնն զգաց, որ արտասուքները հիմա կթափվեն աչքերից և բոլորը կնկատեն: Բայց Նատաշան մթնում չտեսավ այդ:

Խարույկը մարեց: Բոլորը ճամբար գնացին ոչ թե ջոկատներով, այլ ով ում հետ ուզում էր: Նատաշան և Նորան ցածրաձայն երգեցին. «Ակնթա՜րթ, ակնթա՜րթ, ակնթա՜րթ»: Մարգագետնում փայլփլում էր ցողը: Անտոնն իջավ մայթից և բարձր խոտերի միջով քայլեց: Նա շատ էր ուզում թրջել ոտքերը:

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

# ԲԱԼԼԱԴ ՌՈՒՍ ԶԻՆՎՈՐԻ ՄԱՍԻՆ

Օշականից Էջմիածին
Ձգվում է մի ճամփա,
Որով դարերը սուրացին,
Նժույգները թամբած:

Ձգվում է հին հունի մոտով
Վճիտ Քասախ գետի,
Ուր կանգնած է մի հին կոթող,
Աչքը՝ Արարատին:

Դա հուշայուն է սրբազին,
Կարմիր մի հուշաքար,
Ռուս զինվորի հիշատակին,
Հայոց հողում ընկած:

Տեսնես ո՞վ էր զինվորը այդ,
Մեծ բանակից հույսի,
Մեզ մնում է անունն անհայտ՝
Ազատարար ռուսի:

Վոլգայի՞ց էր եկել արդյոք,
Դոնի՞ց, Աստրախանի՞ց,
Երբ հեծում էր երկիրն հայոց,
Կրնկի տակ խանի:

Բայց մենք գիտենք, որ համբուրել,
Ընդունել են սրտանց,
Մեկը նրան կաթ է բերել,
Իսկ մյուսը՝ տաք հաց:

Հայ մայրերը խաչակնքել,
Ինչպես իրենց որդուն,
Ազատարար ռուսին գրկել,
Հրավիրել են տուն:

Եվ մանուկները առաջին
Բառն են լսել ռուսաց,
Ձեռք են տվել նրա խաչին,
Հրացանին՝ ուսած:

Այդպիսի պարզ մի զինվորի
Կյանքում չէին տեսել,
Տեսել էին լոկ օտարի
Ջենք ու զորքերը սև...

Եվ այդ զինվորն ընկավ մարտում
Հանուն հայոց հողի,
Արարատյան կանաչ հովտում,
Ընդդեմ նվաճողի:

Եվ ժողովուրդն երախտապարտ
Նրա շիրմին անդող
Կանգնեցրեց հավերժ հպարտ
Մի երկնասույզ կոթող:

Կանգնեցրեց ի փառս մեծ
Ազատարար զորքի,
Նա, որ եկավ ու մեզ փրկեց,
Որ մենք կանգնենք ոտքի:

Նա մեր բախտը կապեց հավետ
Ռուսաստանի բախտին,
Որ մենք հետո միշտ նրա հետ
Նայենք Արարատին:

Դար ու կես է արդեն անցել
Այն փրկարար օրից,
Եվ մենք երբեք չենք մոռացել
Անհայտ այն զինվորին:

Մեծ հայրենիքն այն անանուն
Ռուս զինվորի հպարտ,
Մեզ տվեց նոր վերածնունդ,
Նոր հայրենիք ու բախտ:

Նա գրեց իր անունը լույս
Մեր ազատված սրտում:
Երբ լսում ենք՝ Ռուսիա և ռուս,
Մեր լեռները են թնդում:

Մենք հիշում ենք եղբայրաբար
Ուժը նրա զենքի,
Որ մեզ տվեց նոր ճանապարհ,
Տվեց մի նոր երկինք:

Մենք զգում ենք նրա հոգու
Պարզությունը խորին,
Աչքերի պես ջինջ ու մաքուր
Անհայտ այն զինվորի:

Մենք զգում ենք նրա երգի
Ազատությունը այն,
Որ փարվում է մեր տարերքին
Ստեպներից իր լայն:

Եվ հիմա մեր երթն է անհուն
Ու վառ է մեր ճամփան,
Փա՜ռք զինվորին այն անանուն,
Ռուս զինվորին միշտ փա՜ռք...



Լուսանկար՝ ԶԱՎԵՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ



## ԳԵՎՈՐԳ ԷՄԻՆ

Անվանի բանաստեղծ Գևորգ Էմինն իր «Դար, նոյ, սեր» գրքի համար արժանացավ շատ բարձր պարգևի՝ նրան շնորհվեց ՍՍՀՄ պետական մրցանակ: Երկրորդ պետական մրցանակն է, որ ստանում է անվանի բանաստեղծը: Առաջին մրցանակը նա ստացել է իր «Նոր ճանապարհ» ժողովածուի համար՝ 1950 թվին:

Էմինի ստեղծագործությունները լայն ճանաչում են գտել ոչ Սովետական Միությունում ու նրա սահմաններից դուրս: Նրա բանաստեղծությունները ու «Յոթ երգ Հայաստանի մասին» ակնարկների գիրքը, որը մի գեղեցիկ սեր է, հայ ժողովրդի պատմության ու վերածննդի մասին, թարգմանվել են բազմաթիվ լեզուներով:

«Պիոներ» ամսագիրը իր բազմահազար ընթերցողների անունից շնորհավորում է սիրելի բանաստեղծին՝ ստացած նոր բարձր պարգևի համար և խնդրում է նրան իր ստեղծագործական կյանքում ավելի լայն տեղ հատկացնել մանուկներին և մանկական գրականությանը:

# ԻՄ ՊԱՏԱՆԻ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ

Ինձ հաճախ են զանգահարում դպրոցներից, գրադարաններից, ճամբարներից ու պիոներական պալատներից, խնդրելով հանդիպումներ ունենալ իրենց հետ:

Հեռախոսի զանգերը շատ են, ժամանակը՝ քիչ, և քանի գնում, զանգերն ավելի են շատանում, իսկ ժամանակն ու եռանդը՝ նվազում...

Դրա համար էլ ես կուզենայի մի երկու խոսք ասել ձեզ, առանց ձեր դպրոցն ու գրադարանն այցելելու, «Պիոներ» ամսագրի միջոցով:

Նախ ասեմ, որ գրողը և ուսուցիչը, իրենց արած գործի նշանակությամբ, նման են իրար, նրանք երկուսն էլ, մոտիկից թե հեռվից, ձեր մեջ ազնիվ հատկություններ են սերմանում ու դաստիարակում՝ ազնվություն, բարություն, ուղղամտություն, ընկերասիրություն, հայրենասիրություն և այլն: Եվ եթե դուք ինձ համարեք ձեր ուսուցիչներից, ապա ես շատ գոհ կլինեմ: Գոհ կլինեմ և, ինչպես այդ վայել է ուսուցչին, խոսում կսկսեմ ձեզ խրատներ տալ...

Խնդրում եմ չվախենալ, իմ խրատը երկար չի լինի և ոչ էլ... նո՛ր... ճիշտ ասած, ինչպես ձեր ուսուցիչներինը: Ես պիտի խոսեմ քիչ, որպեսզի դուք... բա՛վ ասեք:

Լավ սովորեք բոլո՛ր առարկաները և հատկապես հայոց լեզո՛ւն ու գրականությո՛ւնը, որովհետև այդ երկուսը սոսկ դպրոցական առարկաներ չեն:

Ինչպես դուք հետո կիմանաք հայոց պատմությունից, մեր փոքրաթիվ, շատ հին և դարերի ընթացքում բազմաթիվ արհավիրքներ տեսած ժողովուրդը, եթե կարողացել է դիմանալ այդ ամենին, ապրել ու հասնել իր այսօրվա վիճակին, ապա, առաջին հերթին ա՛յն պատճառով, որ մոլեգին կերպով նվիրված է եղել իր մայրենի լեզվին, իր գրականությանը, իր ազգային ավանդներին:

Նույնիսկ մեր մայրենի լեզվի այբուբենի ստեղծումը ազգային ազատագրական պայքարի պերճախո՛ս փաստ է, նախահայրերի ու գավթիչների դեմ մղված անհեղ պայքարի փաստ, որովհետև այդ այբուբենով գրված գրքերը, սկսած հինգերորդ դարի մագաղաթյա ձեռագրերից ու «Վարդանանց պատմություն»-ից մինչև Վարուժանի, Սիամանթոյի ու Չարենցի գրքերը՝ մի-մի խիզախ ու անմահ կռվողներ էին, որոնք կռվում էին օտար զավթիչների դեմ, հանուն մեր հայրենիքի, մեր հոգևոր գանձերի ու պայծառ գալիքի...

Համոզված եմ, որ այսպես է, այցելեք Մատենադարան և կտեսնեք այնտեղ բազմաթիվ հին ձեռագրեր ու գրքեր, որոնք այդ բառիս բուն իմաստով դարեր շարունակ մղվող Ազատամարտի հերոսներն ու զոհերն են, ձեռագրերից մեկը սրով կտրատել են, մյուսը՝ ջրախեղդ արել, երրորդը՝ այրել խարույկի վրա, իսկ մի ձեռագիր մասամբ նույնիսկ... շղթայակա՛պ արել, ինչպես վտանգավոր քաղաքական հանցագործի...

Մեր ժողովրդի դիմացկունու

թյան ու հարատևման գաղտնիքը մեկանից շուտ իմացել էին մեր թշնամիները... Դրա համար էլ պատահական չէ, որ Հայաստանի վրա հարձակվող ամեն մի նվաճող առաջին հերթին ավերում-ոչնչացնում էր մեր դպրոցներն ու գրադարանները, մի առանձին կատաղությամբ սպանում հայ ուսուցիչներին, գրողներին, գիտնական-պատմաբաններին ու ձեռագիր մատյան ստեղծողներին...

Իր հերթին այդ լա՛վ է հասկացել նաև մեր ժողովուրդը (իզուր չէր անցել դարերի փորձը...), նա կրքոտ սիրով ու պաշտամունքով է վերաբերվել իր մայրենի լեզվին, գրականությանը, իր գրողներին և ուսուցիչներին:

Կուզենայի, որ իմանալով այս ամենը, դուք ևս, մեր նախնիների նման, նվիրված լինեք մեր մայրենի լեզվին ու գրականությանը և սիրեք ո՛չ միայն մեր գրողներին, գիտնականներին ու արվեստագետներին, այլև, առաջին հերթին, ձեր ուսուցիչներին, որոնց գործը թերևս ամենի՛ց պատվավորն ու դժվարինն է...

Կուզենայի, որ դուք ոչ միայն գերազանց իմանաք մեր մայրենի լեզուն ու գրականությունը, այլև մրցեք իրար հետ. աշակերտը՝ աշակերտի, դասարանը՝ դասարանի և դպրոցը՝ դպրոցի հետ, մեր գեղեցիկ ու բարեհնչյուն լեզուն չաղարտելու և մայրենի լեզուն գեղեցիկ ու վայելուչ գործածելու մեջ:

Ես, օրինակ, շա՛տ եմ ամաչում ձեզանից շատերի փոխարեն, երբ դուք համարյա ամեն քայլափոխի, թույլ եք տալիս այնպիսի անթույլատրելի (և խիստ տարածված) սխալներ, ինչպես «իմ հետ», «քո համար» և այլն: Էլ չեմ ասում այնպիսի՛, հատկապես աշակերտների մեջ տարածված «էսի», «էդի», «էնի»-ների, «ընգերըս, ընձի լաբե՛ց» և այլ սխալ ու գռեհիկ արտահայտությունների մասին:

Չկարծեք, թե այսպես ասելով, ես ուզում եմ, որ դուք խոսեք չափից ավելի մաքուր, կամ «թորա՛ծ» լեզվով: Դուք քիմիա եք սովորում, և գիտեք, որ թորած ջուրը, թեև շատ մաքուր է, բայց նրանից անհամ ջուր աշխարհում չկա՛... Ես միայն կուզենայի, որ հայոց լեզուն ձեր շուրթերին չկորցնե՛ր իր ա՛յն ավանդական գեղեցկությունը, որի շնորհիվ, դեռևս հնում «ոսկեղինիկ» է կոչվել և մեծ հռչակ է վայելում աշխարհում...

Ի վերջո կուզենայի մեղադրել իմ սերնդի գրողներից շատերին, և ամենից ավելի ի՛նձ, ա՛յն բանի համար, որ մենք քի՛չ ենք գրում մանուկների ու պատանիների համար...

Գրողը հաճախ մանուկների համար գրում է կամ այն ժամանակ, երբ նրա երեխաները փոքր են, և կամ, մե՛ծ ընդմիջումից հետո, իր թոռների համար: Հիմա իմ այդ «մեծ ընդմիջումն» է, և քանի որ ես «Ճարպե» պոեմից ու «Սարյակներ»-ից հետո ձեզ համար ոչինչ չեմ գրել, ապա այսօր իմ փոխարեն ձեզ կներկայանա իմ տղան՝ Արտաշես Էմինը. նա սովորում է Կրուպսկայայի անվան դպրոցի 10-րդ «Գ» դասարանում և ձեզ համար անգլերենից թարգմանել է Դոնալդ Բիսսեթի «Բառերի գետը» հեքիաթը:

ԳԵՎՈՐԳ ԷՄԻՆ

## Բառերի գետը

ԴՈՆԱԼԴ ԲԻՍՍԵԹ

Լինում է, չի լինում, մի գետ է լինում, որը ծայրից ծայր բառերից էր կազմված: Այդ գետը լցվում էր հեքիաթներից ու գրքերից առաջացած ծովի մեջ:

Գետը հոսում էր, բառերն ու տառերը ալիքների նման թավալվում էին ու բախվում ափերին այնպես, կարծես նա սովորական գետ լիներ:

— Լսե՛ք,— ասաց գետը,— եկե՛ք հեքիաթ գրենք...

— Ուռա՜,— գոչեցին բառերը,— հեքիաթի սկիզբը պատրաստ է: Հետո՞, հետո՞...

Եվ գետը սկսեց պատմել.

«Լինում է, չի լինում, բառերից կազմված մի գետ է լինում, որը թափվում է ծովը, իսկ տառերն ու բառերը հեքիաթներ են դառնում»:

Հանկարծ մի փոքրիկ սամույր ցատկեց ջրի մեջ և լողալով անցավ մյուս ափը: Բառերը խառնվեցին իրար և դասավորվեցին սխալ ձևով:

«Լինում է, չի լինում» սկզբի փոխարեն նրանք կազմեցին «Չի՛ լինում, է՛ լինում» նախադասությունը, անսպասելի խառնաշփոթ առաջացնելով:

— Ա՜յ դու չարաճճի,— ասաց գետը սամույրին, որի անունը Չարլի էր,— դու ավերեցիր մեր հեքիաթը:

— Ես շատ ցավում եմ,— ասաց Չարլին,— եթե ես ետ լողամ, գուցե ամեն ինչ ուղղվի՞:

Նա ետ լողաց, մագլցեց ափը և նայեց գետին:

— «Է՛ լինում, լինում չի՛»,— կարդաց Չարլին,— սա, իհա՛րկե, ճիշտ չէ:

Ինչևիցե՛, գետը մի երկու ջրա... ներեցեք, բառապտույտ առաջացրեց և ստացվեց հետևյալ նախադասությունը.




«Լինում է, չի լինում, մի սամույր է լինում՝ անունը՝ Չարլի»:

— Սա հո ի՛մ մասին է: Իմ անունը Չա՛րլի է: Այս հեքիաթը իսկապես ի՛մ մասին է...— փոքրիկ սամույրն այնքա՛ն ուրախացավ, որ սկսեց վեր ու վար ցատկել, սայթաքեց, ընկավ գետի մեջ և նորից բառերը խառնեց իրար:

Այստեղ գետն արդեն սկսեց բարկանալ: Սամույրն արագ դուրս ցատկեց գետից ու նայեց գրածին:

«Մի Չարլի չի լինում, լինում է սամույր, անունը լինում»:

Սա արդեն իսկի՛ բանի նման չէր:

— Իսկ դու ի՞նչ էիր կարծում,— ասաց գետը,— հենց որ մենք հեքիաթն սկսում ենք, դու ամեն ինչ խառնում ես իրար: Հիմա մենք ստիպված ենք ամեն ինչ նորից սկսել: «Լինում է, չի լինում, մի սամո՛ւյր է լինում՝ անունը Չարլի: Չարլին ապրում էր բառերի գետի ափին...»

— Ապրում էր բառերի գետի ափին... Իսկ հետո՞...

Բառերը մտածում էին, մտածում, բայց Չարլիի մասին էլ ոչինչ չէին կարողանում հորինել:

— Ես կօգնեմ ձեզ,— ասաց Չարլին: Նա հեռացավ գետափից, հետո ինչքան կարող էր արագ վազեց ու թռավ ուղի՛ղ գետի մեջտեղը:

Չարլին լողաց դեպի ափը և ետ նայեց: Այս անգամ նա բառերը ճիշտ էր խառնել:

«Լինո՞ւմ է, չի՞ լինում, մի չարաճճի սամո՛ւյր է լինում,— կարդաց նա,— մի անգամ այդ սամույրը հանդիպեց սևուկ փիսիկին:

— Մյա՛ու,— ասաց փիսիկը,— դու պաղպաղակ սիրո՞ւմ ես:

— Ո՛չ,— ասաց Չարլին:

— Մյա՛ու, իսկ կաթ սիրո՞ւմ ես:

— Չէ՛, չե՛մ սիրում:

— Ձուկ է՞լ չես սիրում:



# ԱՆՎԱԽՃԱՆ ՀԱՄԵՐԳ

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

## 1.

Երեք հազար կիլոմետր թռան օդանավով՝ մինչև Մոսկվա: Այնտեղից էլ քսան րոպե ճեպընթացով՝ մինչև մի փոքրիկ ռուսական կայարան՝ երկար, չհիշվող անունով: Եվ հետո ավտոբուսով՝ առանց կանգառի մինչև Սուխանովո: Ուղղակի անտառի մեջ, կաղնիների, կեչիների, եղևնիների գրկում:

Հարավային տոթ, աղմկոտ քաղաքից հետո այս ի՜նչ անսովոր լռություն է:

Անտառը, կարծես, հանդիսավոր երթից առաջ կարճատև հանգստի հրաման է ստացել: Բայց ահա թեթև քամին խախտում է հրամանը, և ծառերը համաչափ օրորվում են, կատարները հպելով իրար: Հիմա էլ կարծես ողջագուրվելու թույլտվություն ստացած լինեն: Տերևների սոսափյունը հայացքդ ձգում է վեր: Ճյուղերը հսկա շուրջպարի մեջ են մտել, երբեմն հանդարտ, օրորուն, երբեմն՝ արագ, շառաչուն. նայած թե քամին ինչ թափ ու ռիթմ է հաղորդում «պարին»:

## 2.

Աղջիկը մոր հետ քայլում էր դարավոր կաղնիների ծառուղով և ամեն կերպ աշխատում էր շրջանցել անձրևից մնացած ջրափոսերը: Հանկարծ նա թռիչքով լռեց: Նայեց շուրջը. ոչ ոք չկար, նայեց վերև...

Ի՜նչ սքանչելի տեսարան: Սկյուռը կաղնու մի ճյուղից մյուսն էր ցատկում, շագանակագույն իր մորթով կանաչ սաղարթին ուրվագծվելով:

Նրա ճանապարհը ծառերի կատարներով է անցնում, ահա թե ինչ:

Աղջիկը սեղմեց մոր թևը՝ չխոսես: Նա կյանքում առաջին անգամ էր սկյուռ տեսնում: Եվ այն էլ՝ ծառին: Եվ այն էլ՝ ցատկոտելիս: Նա կյանքում առաջին անգամ էր լսում սկյուռիկի «աղմուկ»: Օ, ի՜նչ հաճելի հնչյուններ էին, ականջի համար ի՜նչ ախորժալուր երաժշտություն:

Ընթրիքի ժամին, ձվաձև մեծ սեղանի շուրջ, որտեղ հավաքվել

— Սիրո՜ւմ եմ,— ասաց Չարլին:

— Մյա՜ու,— ասաց փիսիկը,— եթե դու գաս ինձ մոտ, իմ մորաքույրը քեզ ձկով թեյ կհյուրասիրի: Մի նաց, կարագ ու ձուկ:

— Ոխա՜յ,— ուրախացավ Չարլին,— քեզ լսելով ախորժակս բացվեց: Կարծում եմ, որ ես կգամ քեզ մոտ: Բայց, մինչև այդ, ասա՛ ինձ, ի՜նչ անենք այս նեքիաթի հետ:

— Այս հեքիաթը կլցվի «Պիոներ» ամսագրի մեջ,— ասաց գետը:

— Ինչ լա՜վ է,— ուրախացավ Չարլին,— դե՛, ես գնացի, ցտեսությո՜ւն:

— Ցտեսությո՜ւն,— ասաց գետը:

Բոլոր բառերը սկսեցին ալիքների պես թավալվել ու գլուխկոնծի տալ, հետո գրեցին «Բարի ճանապարհ Չարլիին» և հոսեցին դեպի հեքիաթների ծովը:

*Անգլերենից փոխադրեց ԱՐՏԱՇԵՍ ԷՄԻՆԸ*



Նկ. ՍԱՀԱԿ ՄՈՒՐԱԴՅԱՆԻ



էին հանգստացողները, աղջիկն ասաց.

— Կաղնիների ծառուղում այսօր ես անսովոր ձայն լսեցի. նայեցի վերև՝ սկյուռ էր:

Սեղանակիցներից տարեց մի կին ասաց, որ անցյալ տարի ինքը երեք անգամ է սկյուռ տեսել, բայց ոչ կաղնու, այլ՝ լորենու վրա: Եվ ավելացրեց.

— Անցյալ տարի դեղձանիկներ ավելի շատ էին հանդիպում, քան այս տարի:

## 3.

Լուսադեմին նրա ականջը մի ձայն ընկավ. սուր, տևական: Դադար: Մի քանի ակնթարթ անց նորից նույնը՝ սուր, տևական: Կրկին դադար: Ապա ավելի ցածր և կարճատև:

Աղջիկը լարեց լսողությունը: Ձայնը լսվեց ավելի հեռվից:



Թռչո՞ւնն է արդյոք:

Սկզբում թվաց, թե պատուհանի տակ է: Իսկ հիմա՝ հեռու-հեռու: Թռավ հեռացա՞վ, թե՞ սա էլ ուրիշն էր, արձագանքեց: Չլինի՞ թե միմյանց ձայն են տալիս, ազդարարում են լուսաբացը, սովորություն ունեն հեռվից-հեռու զրուցելու:

— Սաս-գո՛ւ-գո՛ւ-տի՜...

— Սաս-գո՛ւ-գո՛ւ-տի՜...

Բո՞ւ է, թե՞ գիշերահավ: Արթնանալու իրենց ժամն ունեն, երևի, իրենց հատուկ երգը՝ մյուսներից տարբեր, բոլորովին տարբեր:

Չվաձև սեղանի շուրջ քննարկեցին այդ հարցը:

— Նմա՞ն էր նորածին երեխայի լացի,— հարցրեց հանգստացող կանանցից մեկը:

— Սաս-գո՛ւ-գո՛ւ-տի՜...— աղջիկը փորձեց լսածը վերարտադրել:

Կինը գլուխն օրորեց.

— Լուսաբացին ես խորն եմ քնում, բայց, հավանաբար, բու եղած լինի:

## 4.

Դեպի անտառ տանող արահետըն ո՞ւմ ոտնահետքերն է կրում: Անտառապահի՞, հովտաշուշան փնտրող աղջիկների՞, թե՞ որսորդի: Նեղ ոլորապտույտում աղջիկը նկատեց երկու փոքրիկ, սպիտակ սունկիկ: Այո՜, այո՜, սունկիկ: Դրանք այնքան նուրբ ու փոքրիկ էին, որ սունկ անվանել չարժեր:

Ինչ լա՛վ է, որ անտառապահը և հովտաշուշան փնտրող աղջիկները շրջանցել էին աղավնու ձվերի չափ սպիտակ-սպիտակ սունկիկները: Հանկարծ աղջկան թըվաց, թե երկու փոքրիկ, բյուրեղապակյա զանգակ կպան իրար, և ազնիվ ապակու կրնգոցին գումարվեց մաքրությունը, ճերմակությունը, անթերի կլորությունը: Շիկավուն հողի վրա իրենց քնքուշ տեսքով տեսնողին խելահեղ անող նկար էր դա և ուրիշ ոչինչ:

Աղջիկը խոնարհվեց, ձեռքերը հենեց ծնկներին և զննեց սունկիկները: Հրճվանքից օրորեց գլուխը: Իր փխրուն, նուրբ իրանով, անտառի ոլորուն արահետում, սունկերին մոտիկից դիտող աղջիկը հիացած էր անակնկալ գեղեցկությամբ:

— Սունկի մյուս տեսակներն այնպե՞ս խորամանկ թաքնվել գիտեն,— ասաց նա մորը:— Իսկ այս մեկը՝ իր քրոջ հետ, ուղղակի ճամփի վրա է:

Մայրն ասաց, որ սպիտակ սունկը երևի դիտմամբ է հայտնըվել այստեղ, որ մարդկանց զգույշ քայլել սովորեցնի: Մայրը ճիշտ էր, այլապես սրանք ոտքի տակ վաղուց տրորված-կորած կլինեին: Մինչդեռ հիմա կանգնած էին կողք կողքի այնպես, կարծես լուսային զույգ ազդանշան լինեն:

Չվաձև սեղանի շուրջ շարունակվեց խոսակցությունը սունկերի մասին:

— Ննջարանի պատուհանից տարբեր տեսակի երկու շարան սունկ եմ կախել՝ յուղասունկ, դաշտի ագարիկոն, կեչու թնջուկ, պղպեղասունկ, կաղնեսունկ, ինչ որ հանդիպել է: Սուխանովո գյուղի մոտակա անտառում դեռ կարելի է հավաքել,— ասաց զրուցակից կինը:

Անտառ գնալուց առաջ աղջիկն անցնում էր նրա պատուհանի



տակով և դիտում շարուկները, որոնք չորացել-սմքել էին և տձև ուլունքաշարի վերածվել:

Լավ է, որ արահետի սունկիկը չի կարելի ուտել...

## 5.

Անտառում շատ լճակներ կային: Դրանցից մեկը՝ ամենափոքրը, կարծես պահմտոցի խաղալու մըտադրությամբ՝ թաքնված լիներ: Բացատն անցնում էիր, ջրհանմեքենայի փայտե տնակն անցնում էիր, վայրի անանուխի հովիտն անցնում էիր, երևում էին ուռենիները: Ուռենիների թիկուն-



քում՝ լոբենիները: Կեչիներ էլ կային սև-սպիտակ շերտավոր բըներով: Լճակը երեք կողմից շըրջապատված էր ծառերով, և ափի միայն մի փոքրիկ հատվածն էր ազատ, որտեղից մարդիկ կարող էին վայելել բացվող տեսարանով:

Աղջիկը կանգնում էր ու նայում գլխիվայր լողացող ուռենիների ու կեչիների անդրադարձումներին:

Զեփյուռը սահում էր լճի վրայով և ալյակները, ափից սկսվելով, սկզբում փոքր, ապա մե՛ծ, մե՛ծ, մե՜ծ շրջանակներ էին գծում լըճի մակերևույթին: Եվ փախչող ալյակների մեջ կեչիների բարձր, նուրբ հասակը արտացոլվում էր սև-սպիտակ վիգզագներով:

Աղջիկն ափսոսում էր աչքը կտրել լճի սքանչելի հայելուց, որովհետև ալյակները մարել էին և հիմա ծառերի գլխիվայր ստվերներով շրջափակված մի կտոր կապույտ երկինք էր լողում: Եթե մութը վրա չհասներ, գուցե թե երկնքի այդ կտորը մշտապես մընար լճակի խորքում:

— Ափսոս, լճակում քիչ ձուկ կա,— ընթրիքի ժամին ասաց նըկարիչը,— մեծ լճում կա, բայց հեռու է, դժվարանում են պառիթափին իջնել:

Աղջիկն հիշեց, որ մի անգամ, երբ ինքը նստած էր մեծ լճի ափին, նկարիչն ինչպիսի բավականությամբ դուրս քաշեց կարթը, որի ծայրին թպրտում էր կարմրավուն ձկնիկը:

Խե՜ղճ ձկնիկ. մեծ լճից տեղափոխվեց ջրով լի ապակե տուփի մեջ: Այդ նեղվածքում ինչքա՞ն կարելի էր դիմանալ:

## 6.

Մեղուներ, գույնզգույն բզեզներ, պատիկներ, ինչքա՞ն, ինչքա՞ն շատ: Անտառի որ մասում ուզում ես կանգնիր՝ նրանք քո շուրջն են: Սպիտակ, դեղին, կարմիր, կապույտ թիթեռները չեն ուզում աղմկել և դրա համար են անձայն թռչկոտում: Իսկ բզեզները՝ ուզում էին աշխարհին խմանս, որ իրենք կան:

— Զը՜զ— ես այստեղ եմ...

— Զը՜զ— ես այստեղ եմ...

Բզեզների մոտեցող ու հեռացող երգը աղջկան չէր վախեցնում. նա անշարժ կանգնում էր բացատում և հայացքով հետևում էր թիթեռների ու բզեզների խաղին: Մթնշաղին բզեզներն ու անտառի փոքրիկ թռչունները միանգամից լռում են: Եվ եթե այդ պահին



քամի էր բարձրանում, անտառը վեր էր ածվում երգչախմբի, կատարներն իրար տալով, նա իր սովորական երգն էր երգում, և այդ մեծ համերգին մեկ-մեկ էլ գումարվում էր ագռավի կռինչն ու թևաբախումը, չորացած ճյուղի չրթչրթոցը, ճահճախոտերի մեջ ցատկող գորտերի չլմփոցը և հեռվից՝

— Սսս-գո՜ւ-գո՜ւ-տի՜...

— Սսս-գո՜ւ-գո՜ւ-տի՜...

## 7.

Սուխանովո: Ռուսական անտառ:

Վաղուց, շատ վաղուց իշխան Բալկոնսկին այստեղ կառուցել է իր ամառանոցը՝ պալատ, դամբարան, ժամատուն, «Կատվի տնակ», տնկել է կաղնիների ու լորենիների ծառուղի:

Կույր ծերունին ասում է.

— Այսօրվա պես հիշում եմ, երբ քանդեցին պալատի դիմաց գտնվող ժամատունը, տեղը ծառեր տնկեցին: Գնացեք տեսե՛ք, հիմա այնտեղ կեչիներ են աճում: Զվարմանաք, եթե ասեմ, որ քանդված ժամատների տեղում շատ արագ կեչիների պուրակ է աճում:

— Ոչ միայն Սուխանովոյում, ուրիշ տեղերում նույնպես հանդիպել եմ,— ասում է նա աղջըկան:

Իսկ անտառը, է՜, դարավոր այդ անտառը, Սուխանովոյի պարդըն ու հարստությունն է: Դամբարանի կողքին բրոնզե արձան կա՝ քանդակված երկու հարյուր տարի առաջ: Նստած է գլխիկոր Ջրահարսը՝ ձեռքը կրծքին սեղմած: Ամեն առավոտ հանգստացողներից մեկնումեկը մի փոքրիկ ծաղկեփունջ է դնում Ջրահարսի ափում:

Կույր ծերունին նստում է մոտակա աթոռին: Գիտի, որ այդ կողմով շատ է անցուդարձը: Գուցե մեկնումեկը բարի լինի գալ և իրեն հետ մի երկու խոսք փոխանակել: Կույր ծերունին նստում է երկար աթոռի ծայրին, ձեռնափայ-



տին հենված, մի փոքր թեքվելով դատարկ կողմի վրա՝ իբր սպասում է հարևանի:

Համարյա ամեն օր նկարիչն իր փոքրիկ աթոռով ու ներկապնակով տեղավորվում է Ջրահարսի դիմաց ու ձեռքն առնում վրձինը: Նա մի քիչ խռովկան-

դժգոհ կեցվածք է ընդունում. երեվի ուզում է հասկացնել՝ չմոտենաք, չխանգարեք ինձ: Մեկ-երկու, երբեմն երեք ժամ նկարում է: Իսկ երբ հավաքում է ներկապընակն ու հեռանում, աղջիկը մոր հետ գնում կանգնում են ճիշտ և ճիշտ նրա «գրաված» տեղը: Ուզում են համոզվել, թե արդյո՞ք նկարիչն ամենագեղեցիկ կողմից է դիտում Ջրահարսին: Եվ պարմացած իրար են նայում. նկարչի դիտակետից արձանն ուղղակի չքնաղ է: Աղջիկը մտքում շնորհակալություն է հայտնում նկարչին, որովհետև միայն ու միայն այդ դիրքից է Ջրահարսն ուրվագծվում երկնի կապույտին, և արևի շողերը, հպվելով նրա մարմարին՝ ստվերներ են թափում դեմքին, պարանոցին, ուսերին:

8.

Եկավ հրաժեշտի ժամը: Հանգըստացողները վերջին անգամ գնում են անտառ՝ լսելու հինավուրց մեղեդին: Եղևնիների ասեղիկ-տերևները տարի առ տարի թափվել են գետին և խսիրի նըման փռվել նրանց ոտքերի տակ, յուրաքանչյուր քայլի հետ շրշում են ու խշշում: Վերջին անգամ անցնում են վայրի անանուխի բացատով, որտեղ սպիտակ, խոշոր թռչունները վայրէջք կատարելուց առաջ օդում կորագծեր են նկարում:

Եվ ահա նրանք կանգնած են լճափին: Միտք ունեն հաջորդ ամառ նորից գալ այստեղ: Կհաջողվի՞: Կյանքում այնքա՜ն անակընկալներ են լինում:

Ո՞ւմ համար ավելի շուտ կընդհատվի անտառի համերգը՝ նկարչի՞, սեղանակից կնո՞ջ, կույր ծերունո՞ւ, աղջկա՞, թե՞ նրա մոր: Ո՞վ գիտի: Պարզ է միայն մի բան՝ անտառի համերգն անվերջ է, անվախճան:

Զվաձև սեղանի շուրջ նորից ընթրիքի կհավաքվեն: Բայց արդեն՝ նոր հանգստացողներ:

*Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

*Նկ. ԶԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

# ԸՆԿՈՒԶԵՆՈՒ ԵՎ ԲԱՐԴՈՒ ՎԵՃԸ

*ՌԱԶՄԻԿ ՍԱՐԳՍՅԱՆ*



**— Ընկուզենի՛,— ասաց բարդին,—**
**Չեմ նախանձում ես քո բախտին,**
**Վրադ քարե կարկուտ տեղում**
**Ու ճյուղերդ են անվերջ խեղում:**
**Փոխարենը, անխե՛լք համառ,**
**Ի՞նչ ես տալիս դրա դիմաց,**
**Որ դու այդպես շաղ ես տալիս**
**Բարիքներդ մարդկանց առաջ...**
**— Գեղեցիկ ես, բունդ շիտակ,**
**Բայց խելք չունես կորեկի չափ,—**
**Պատասխանեց ընկուզենին,—**
**Մոլախոտն էլ է կանաչում**
**Ու ինքն իրեն համար աճում:**
**Պես-պես ծաղիկներ կան սիրուն,**
**Բայց որ ծաղկի պես չեն բուրո՞ւմ...**
**Ճշմարիտն այն է, իմացի՛ր,**
**Պետք չէ լինել լոկ գեղեցիկ:**
**Հարկավոր է նաև բար տալ,**
**Թեկուզ բարն իր չորս կողմ շաղ տալ:**



# ԺՊԻՏ ԲԱԺԱՆՈՂ ՄԱՐԴԸ



ԳԵՎՈՐԳ ԶԱՐԵՆՑ

Ճանապարհը անցնում էր նրա տան պատին քսվելով: Անունը Վաղինակ էր, կարճ՝ Վաղո էին ասում: Պատի տակ փայտե նստարան կար՝ հին, արևից ու անձրևից ծռմռված, ինչպես Վաղոյի դարչնագույն գլխարկի կոկարդը: Անենք, ինքը՝ Վաղոն էլ էր ծռմռված: Փակագծի նման մեջքը կորացած էր, բերանքսիվայր կընկներ, եթե ամուր չհենվեր հոնի ձեռնափայտին:

Արևոտ օրերին նա դուրս էր գալիս, նստում պատի տակ դրված նստարանին, մինչև տնեցիները կանչում էին, որ գա մի բան ուտի կամ քնի: Ձմռանը տանից ոտքը դուրս չէր դնում: Հարևանները կատակով ասում էին. «Վաղոն արջի քուն է մտել»:

Վաղոյի նստարանը տարին կլոր գրավված էր լինում: Պատճառը ավտոբուսի կանգառն էր: Մարդիկ այստեղ էին հավաքվում, սպասում ավտոբուսին:

Երբ Վաղոն մենակ էր լինում նստարանի վրա, ավտոբուսը կանգ չէր առնում: Վարորդը գիտեր, որ նա ուղևոր չէ, տեղ չունի գնալու, էլ ինչո՞ւ իզուր կոտրեր մեքենայի թափը: Ավտոբուսը գնում էր, իսկ Վաղոն մնում էր նստած «Ավրորա» սիգարեթի մնացորդը բութ մատի և ցուցամատի արանքում: Սիգարեթի ծուխը ծուլ-ծուլ, հորանջի պես, բարձրանում էր, դեղնացնում առանց այն էլ դեղնած նրա մատները:

Քաղաքում բոլորը ճանաչում էին Վաղոյին: Իսկ ով առաջին անգամ էր տեսնում, լսում նրան, չէր կարող չասել. «Մեծ ամոթ կլինի, եթե էս ծերուկը սուտլիկ չլինի»:

Վաղոն սուտլիկ չէր: Ուղղակի ինքն էլ էր կարծանում, որ իր պատմածները ուրիշները անեկդոտի տեղ են ընդունում ու ծիծաղում:

— Մի տարի էլ, տղե՛րք ջան,— մաշված ցախավել հիշեցնող բեղերը սղալելով պատմում էր Վաղոն,— սայլը լծեցի ու գնացի անտառ, Ղազախբեկի կողմերը՝ տան համար շինափայտ բերելու: Օխտը մետրանոց գերաններ էին հարկավոր: Շատ խորացա անտառում, բայց հարմար ծառ չգտա: Մեկ էլ հանկարծ տեսնեմ, դեմի ծմակում մի մեծ հաճարենի՝ ուղի՜ղ, ինչպես թվանքի լուլա: Կացինը քաշեցի ու՝ թը՛խկ, հա թը՛խկ, թը՛խկ, հա թը՛խկ... Կտրեցի, վեր գցեցի, հետո էլ կեսից կտրեցի...

Վաղոյի պատմությունը այստեղ էլ կվերջանար, եթե հավաքվածներից մեկը չհարցներ.

— Վաղո՛ քեռի, բա ինչո՞ւ կեսից էլ կտրեցիր:

— Է՛, տղա՛ ջան, էդ անտեր ծառը կեսից արմունկ էր տվել:

Ծիծաղը բռնում էր կանգառը: Մարդիկ ծիծաղում էին, թե էլ ո՞ւր մնաց «ուղի՜ղ, ինչպես թվանքի լուլան»:

Ոգևորված հաջողությամբ, Վաղոն մի ուրիշ պատմություն է անում.

— Ջահել ժամանակս էր: Կլինեի քառասուն-քառասունհինգ տարեկան: Պուճուր Դիլու կողմերը դըրդալկուտի պահակ էի: Դրդալին նոր էր կաթն ընկել: Էն անտեր ղշերը հանգիստ չէին տալիս, կտցահարում էին, դրդալին ուտում, թողնում միայն կոթը: Բայց սա դեռ ոչինչ... Մի գիշեր քնից վեր կացա և ի՞նչ տեսնեմ, դրդալկուտի կեսը տափանած: Նախագահը եկավ տեսավ, թուք ու մուր տվեց. «Ամոթ չի՞, ընկե՛ր Վաղո: Մի հեկտար եգիպտացորենն էլ (այսինքն ուզում է ասել դրդալին) չես կարողանում պահել: Աչխօրդ կտրելու եմ...»

Էս որ ասաց նախագահը, սիրտս մի տեսակ եղավ: Ինքս ինձ ասացի. «Վաղո՛, դու տղամարդ չես, եթե էդ վնասարարին չբռնես»: Հաջորդ գիշերը աչքս չկպցրի: Հրացանս կախ տվեցի դրդալու թրի պես ցցված տերևից ու թաքնվեցի: Լուսադեմին ոտքիս վրա կանգնած քիչ էր մնում, թե աչքս կպչի, մի փըռթփըռթոց ականջիս հասավ: Ձեռս դեռ հրացանիս չհասցրած, մի աժդահա կենդանի դեմս ելավ ու կանգնեց եռևի ոտքերի վրա: Տերը մեռածը արջ էր սարի չափ: Վախից թուքս էլ չկարողացա կուլ տալ: Աչքերս չռած, ես նրան եմ նայում, նա՝ ինձ: Մեկ էլ էդ անտերը գլուխը ետ տարավ-բերեց ու՝ «թյո՛ւ» թքեց երեսիս: Մինչև ես թքոտ կարբեի երեսս, սա լեզու առավ ու. «Վաղո՛, դո՞ւ էլ ես կոլխոզնի՞կ»: Ասեց ու էլ չսպասեց պատասխանիս, երեսը թեքեց ու հեռացավ: Էդ անտերը երևի նախկին կուլակ էր եղել...

Մինչ տղաները փորները բռնած ծիծաղում էին, եկավ ավտոբուսն ու տարավ տղաներին՝ նստարանին մենակ թողնելով քթի տակ ժպտացող Վաղոյին:

Երկու տարի առաջ մեռավ Վաղոն: Նրա թաղմանը շատ մարդ էր հավաքվել, հատկապես երիտասարդները, որոնց այնքան շատ էր սիրում նա, ուզում էր բոլորին ուրախ, ժպտերես տեսնել: «Ջահելի սիրտը չպետք է կոտրած լինի, պիտի նա ուրախ մեծանա, որ աշխարհին նկատմամբ չարությամբ չլցվի: Չարությունը չարիք է աշխարհի ու մարդկանց համար»,— այս էր Վաղոյի դավանանքը:

Նրան թաղեցին քաղաքային գերեզմանոցում: Նրա շիրմին շա՜տ ծաղիկներ դրվեցին: Այդ ծաղիկները ժպիտներ էին հիշեցնում, Վաղոյի բաժանած ժպիտների նման:

# ՌՈՒՍՆ ՈՒ ՀԱՅԸ ՀԱԶԱՐ ՏԱՐՎԱ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ ԵՆ

Հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը սկսվել է մեզանից ավելի քան հազար տարի առաջ: Հայերի և ռուսների կապերը սկզբում տնտեսական բնույթ են կրել: Այդ մասին են վկայում Հին Ռուսիայի մայրաքաղաք Կիևում և միջնադարյան Հայաստանի մայրաքաղաք Դվինում գտնված նույնանման ոսկե ականջօղերը:

XIII դարում ռուսական ապրանքները (մորթիներ, վուշ և այլն) վաճառահանվում էին նաև Կիլիկիայի հայկական պետությունում: Ռուսական որոշ վանքերի (հատկապես Ռոստով-Սուզդալյան երկրի) ճարտարապետությունը նման գծեր ունի հայկականի հետ: Ռուսերեն թարգմանվել են հայ և հայերեն՝ ռուս հեղինակների գործեր: Ռուսական իշխանները իրենց թշնամիների դեմ մղած արյունոտ պայքարին մասնակից էին անում նաև հայերին: 1009 թ. Կիևի իշխան Վլադիմիրին հայերը ռազմական օգնություն են ցույց տվել և օգնել թշնամիներին արտաքսել երկրի սահմաններից:

Երբ Հայաստանում հաստատվեց մոնղոլ-թաթարական լուծը, բազմաթիվ հայեր գաղթեցին հյուսիս, դեպի Վոլգայի ափի քաղաքները, Ղրիմ: Ղրիմում կառուցեցին հայկական վանքեր, եկեղեցիներ: Երբ Լենկթեմուրը գրավեց Ղրիմը, հրամայեց սրի քաշել ոչ թուրք բնակիչներին, այդ թվում ռուսներին ու հայերին:

XII—XIV դարերում հայ վաճառականները առևտուր էին անում ռուսական շուկաներում՝ Կիևում, Նովգորոդում, Մոսկվայում և այլ քաղաքներում: Նրանք Մոսկվա էին բերում թանկագին քարեր, համեմունքներ, մետաքս, ընտիր զենքեր, ձկնեղեն և այլն, իսկ Մոսկվայից գնում էին թանկարժեք մուշտակներ, մորթիներ, մետաղներ: Հայ վաճառականներին Մոսկվայի հետ ամուր կապելու համար Իվան Ահեղ ցարը իր կառուցած Վասիլի Երանելու տաճարի խորաններից (փոքր եկեղեցի) մեկը կոչել է տվել Գրիգոր Լուսավորչի անունով:

Հայ վաճառականներին նոր արտոնություններ տրվեցին 1666 թվին, երբ Մոսկվա ժամանեց Նոր Ջուղայի (Սպահանի) հայ առևտրական ընկերության ներկայացուցիչ Գրիգոր Լուսիկենցը: Ռուսական կառավարության հետ 1667-ին կնքված հատուկ պայմանագրով հայերին իրավունք էր տրվում ապրանքներ վաճառել Ռուսաստանում կամ նրա վրայով տեղափոխել Եվրոպա: Այդպիսի արտոնու-

## ՄԵԾԵՐԻ՛Ն ՀԱՎԱՍԱՐ



Սկսվել էին բերքահավաքի եռուն օրերը: Կարմրայտ դեղձերի ծանրությունից խոնարհվել էին ծառերի ճյուղերն ու այգիները դեղձակույտեր էին հիշեցնում: Ասես կախարդական գավազանի հարվածով մի քանի օրում հարյուրավոր հեկտարների բերքը հասունացավ ու արցունքի կաթիլների նման գլոր-գլոր սկսեց թափվել ցած: Շրջանի տնտեսությունները հավաքեցին իրենց ուժերը, բերքահավաքի ելան: Սակայն շատ էր բերքը և անհամեմատ փոքր՝ հավաքող ուժերը: Բնությունը շռայլորեն էր վարձատրել հողի աշխատավորին, մարդիկ ի վիճակի չէին իրենց ստեղծածն անկորուստ ու ժամանակին հավաքելու: Օգնության եկան աշակերտները:

Առաջին օրը, երբ բարձր դասարանցիներն աշխատանքի դուրս եկան, Նոյեմբերյանի № 1 դպրո-

թյուն չէր տրվել ոչ մի օտարերկրացու: Այս պայմանագիրը հաջողությամբ իրագործելու համար ռուսները Վոլգայի վրա կառուցեցին հատուկ նավատորմ:

Եթե Ռուսաստանում հայերին հովանավորում էին, ապա Թուրքիայում շարունակում էին հալածել ամեն մի չնչին առիթով: Հայը այնտեղ զրկված էր մարդկային ամենատարրական իրավունքներից և առանց դատ ու դատաստանի սպանվում էր, թալանվում: Ռուսների հետ հայերը ավելի ու ավելի մեծ հույսեր էին կապում: 1660 թվին Նոր Ջուղայի հայ վաճառականները ռուսական ցարին նվեր բերեցին ադամանդակուռ մի գահ (պահվում է Մոսկվայի Կրեմլի զինապալատում), դրսեվորելով իրենց նվիրվածությունը ռուսական պետությանը:

Հայերին մեծապես ոգևորում էր Սև ու Կասպից ծովերի ափերին ռուս զինվորների երևալը: Ռուսաստանի ձգտումը՝ ամրանալու այդ շրջաններում, լիովին համընկնում էր հայ ժողովրդի շահերին: Դեպի Վոլգայի ափերը, Ղրիմ, Ռուսաստանի հարավարևմտյան շրջաններ գաղթած հայությունը բարեկամական կապերի մեջ էր տեղացի ռուս բնակչության հետ: Իսկ Արևմտյան Հայաստանում (հատկապես նրա մաս կազմող Վասպուրականում) կային Ռուս կամ Ըռուզ, Մոսկով անունները կրող անձինք («Ըռուզ», «Ըռուզ խաթուն», «Ըռուզ բեկ» և այլն):

Ռուս ժողովրդի հանդեպ ունեցած բարեկամական զգացումը հայերի մեջ ուժեղացավ մասնավորապես ռուս-թուրքական պատերազմից հետո (1677—1678): Հայ առաջավոր գործիչները՝ Իսրայել Օրին, Հովսեփ Էմինը և ուրիշներ, կազմում են Ռուսաստանի օգնությամբ Հայաստանը թուրքական բռնապետությունից ազատագրելու ծրագրեր: Հայերին ոգեշնչում էր 1722 թ. Ռուսաստանի ցար Պետրոս Մեծի ձեռնարկած արշավանքը դեպի Կասպից ծովի ափերը: Սակայն այդ ժամանակ օտարերկրյա պետությունները խանգարեցին, որ Ռուսաստանը թուրքական լծից ազատագրի Հայաստանն ու Վրաստանը, 1780 թ. հունվարին Պետերբուրգում, զորավար Ա. Վ. Սուվորովը (որի մայրը հայուհի էր) Հայաստանն ազատագրել ու ... համար տարբեր միջոցների է դիմում: Նա կապեր է հաստատում ռուսահայ գործիչների, Ղարաբաղի մելիքների, հայոց կաթողիկոսի հետ: Իրենց հերթին Երևանի գավառի, Ղարաբաղի և այլ շրջանների հայեր դիմում են ռուս հրամանատարությանը՝ հայ ժողովրդին ազատագրելու խնդրանքով: Սակայն միջազգային բարդ իրադրությունը դարձյալ խափանում է այդ: Միայն 1827 թ. Ռուսաստանը կարողացավ ազատագրել Արևելյան Հայաստանը: Բազմաթիվ ռուս զինվորներ իրենց կյանքը զոհեցին հանուն Հայաստանի ազատության: Այսպիսով, հայ ժողովրդի մի հատվածը փրկվեց ֆիզիկական բնաջնջումից, հայ մեծ լուսավորիչ Խ. Աբովյանի խոսքով ասած՝ վրա հասավ «օրհնված սհաթը» և հայ ժողովուրդը իր բախտը ընդմիշտ կապեց ռուս մեծ ժողովրդի հետ:

*ՎՐԵԺ ՎԱՐԴԱՆՅԱՆ*
*Պատմական գիտությունների թեկնածու*

---

ցի վեցերորդ Ա դասարանցիները դիմում գրեցին իրենց դասղեկին, թե այսպես-այսպես, մենք նույնպես ուզում ենք հանրօգուտ աշխատանք կատարել մասնակցել բերքահավաքին: Նրանց խնդիրը հարգվեց:

Հաջորդ առավոտյան նրանք դպրոցական համազգեստի փոխարեն բանվորական շորեր հագած եկան ու մեքենա նստելով մեկնեցին դաշտ:

Դաստիարակության գծով դիրեկտորի տեղակալ և դպրոցական արտադրական բրիգադների ղեկավար Գառնիկ Գիշյանը դիմելով բրիգադիր Աստղիկ Պետրոսյանին ասաց.

Օգնություն էիք ուզում... Խնդրեմ, նոր, թարմ ուժեր:

Բրիգադիրը բավականությամբ ժպտալով, ուզում էր շնորհակալության խոսք ասել լրացուցիչ աշխատուժ բերելու համար, բայց տեսնելով, որ ավտոբուսից միայն 12 13 տարեկան երեխաներ են իջնում, զարմացած հարցրեց.

Սրանք են աշխատողները... Ի՞նչ եք բերել սրանց:

Իրոք, առաջին օրը դասարանը չկարողացավ կատարել առաջադրանքը:

Սակայն օրեցօր ջոկատը ավելացնում էր արտադրանքը և շուտով չհասցած՝ նրանք արդեն մեկ օրում 1000 արկղ էին հավաքում, որը գրեթե չէր զիջում տարեց ու փորձված դեղձ հավաքողների օրվա առաջադրանքին, իսկ դասարանի գավաթակիրն ու չեմպիոնը՝ Հայկ Ղազարյանը, մեկ օրվա ընթացքում 70 արկղից ավելի բերք դեղձ էր հավաքում և բրիգադիրը արդեն ոչ միայն գոհ էր նրանց օգնությունից, այլև հարկադրված էր խոստովանել, որ դեղձահավաքի քսան օրերի ընթացքում ջոկատը մեծ օգնություն ցույց տվեց տնտեսությանը և ամպամած եղանակներն այլևս կորստաբեր չէին կարող լինել բերքի համար:

*ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ*



# ԻՄ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀԸ



«Պիոներ» ամսագիրը այս համարից բացում է մի նոր բաժին, որ կոչվելու է «Իմ պատկերասրահը»:

Մեր ընթերցողներից յուրաքանչյուրը կարող է այսուհետև իր սենյակի որևէ անկյունում կախել տնային թանգարանի ապակեպատ էջեր:

Մենք ձեզ կծանոթացնենք ճարտարապետական հուշարձանների, գեղանկարչության և քանդակագործության, ձեր հասակակիցների լավագույն աշխատանքների հետ:

Հայաստանը, հաճախ արդարացիորեն անվանում են «թանգարան բաց երկնքի տակ»: Մեր մայրաքաղաքը, իրոք թանգարանային քաղաք է. այստեղ է Մատենադարանը՝ համաշխարհային մշակույթի ամենահին և հարուստ գրապահոցներից մեկը, պատմության թանգարանը, պետական պատկերասրահը, Սովետական Միության մեջ միակ ժամանակակից կերպարվեստի թանգարանը և աշխարհում առաջին մանկական պատկերասրահը:

Հայաստանում կարելի է տեսնել արվեստի կարգացման բոլոր փուլերը՝ սկսած ժայռապատկերներից մինչև ձեր հասակակիցների վերջին աշխատանքները, որոնց ներկերը դեռ չեն չորացել թղթի վրա:

Բանվորների, ինժեներների, տիեզերագնացների, կոլտնտեսականների, բժիշկների հետ միասին, ձեր կյանքն ավելի են գեղեցկացնում ճարտարապետները, նկարիչները, երաժիշտները, քանդակագործները, բանաստեղծները: Այն լավագույնը, ինչը նրանք ստեղծում են, կոչվում է արվեստ: Արվեստը հացի, օդի, ջրի նման անհրաժեշտ ու մեծ հասկացություն է: Պատկերացրեք առավոտյան դուք արթնացել եք և արվեստ չկա: Առանց կինոյի, թատրոնի, երաժշտության, գրքերի, նկարների, քանդակների որքա՜ն դատարկ և տխուր կդառնար կյանքը:

Ձեզ համար կառուցվել են հրաշալի պիոներների և դպրոցականների պալատներ, տիկնիկային թատրոն, մանկական պատկերասրահ: Իսկ մեծ Հոկտեմբերի 60-ամյակի առթիվ ձեզ հաճելի անակնկալ է սպասում. մեծահասակները ձեզ համար պատրաստում են ճոխ նվեր՝ գեղագիտական դաստիարակության կենտրոն: Դուք կունենաք ձեր սեփական թատրոնը, համերգային դահլիճը, գեղարվեստական ստուդիան, որտեղ կզբաղվեք գործագործությամբ, գոբելենով, գեղանկարչությամբ, գծանկարով, խեցեգործությամբ, փայտի վրա փորագրությամբ, ասեղնագործությամբ, դուք ավելի մոտիկից կըշփվեք արվեստին:

«Պիոներ»-ի պատկերասրահը կօգնի ձեզ ճանաչելու Թորոս Ռոսլինին և Պիծակին, Տրդատին, Հակոբ Հովնաթանյանին և Հովհաննես Այվազովսկուն, Վարդգես Սուրենյանցին և Հակոբ Կոջոյանին, Մարտիրոս Սարյանին ու Մինասին...

Հաճելի կլինի ստանալ ձեր նամակ-արձագանքները՝ ցանկություններով և հարցերով: Մենք ուրախ կլինենք, եթե «Պիոների» պատկերասրահը օգնի ձեզ՝ հաղորդակցվելու գեղեցիկի աշխարհին:

ՀԵՆՐԻԿ ԻԳԻԹՅԱՆ
արվեստաբան



ՊԱԲԼՈ ՊԻԿԱՍՍՈ
«Դիմանկար»



Հուշարձան, VII դ.,
Աշտարակի շրջան



ՌՈՒԶԱՆՆԱ ԳՈՒԼԱԲՅԱՆ, 10 տ.
Օլեգ Պոպովի դիմանկարը




# ՄԱՐՏՆՉՈՒՄ ԵՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Անտառի մեջ ոլորվող արահետի ծայրին կանգնած է «Մայր հայրենիքը» և մարտական երգեր երգելով, ճանապարհում է իր որդիներին դեպի ռազմի դաշտ: Որդիները խումբ-խումբ ծնկի են գալիս նրա դիմաց, երկյուղածությամբ համբուրում են զգեստի քղանցքներն ու երդման խոսքեր շշնջալով, գնում են մարտի:

Բացատով քայլում է փոքրիկ թմբկահարը և նրա թմբուկի ձայնը մարտական կոչի նման տարածվում է հեռու-հեռու:

— Պիոներնե՛ր,— ձայնում է փոքրիկ թմբկահարը,— մենք չպետք է թույլ տանք, որ տապալվեն այս հսկարու ծառերը, որ մոխրանան գեղեցիկ ծաղիկները, որ թռչունների երգերը սպանվեն ռումբերի որոտների մեջ, որ արևը խորտակվի ծխի ու փոշու ամպերի մեջ...

Լսվում է կրակոց և փոքրիկ թմբկահարի անշունչ մարմինը դանդաղ ընկնում է մայր հողին:

Անտառի ստորոտում գտնվող գետնափոր բլինդաժում զայրացած սպան ինչ-որ բան է պատմում զինվորներին:

— Բոլորովին անհասկանալի է,— ասում է սպան,— ինչ-որ փոքրիկ երեխաներ խանգարում են մտնել մի ամբողջ գնդի: Գիշերը այրել են ռազմամթերքի պահեստը, ցերեկը հափշտակել են իմ հանձնակատարին՝ «խիստ գաղտնի» մակագրությամբ ծրարի հետ միասին: Սանրե՛լ անտառը,— վերջապես ավելի զայրանալով գոռում է սպան,— ա՛յ տե՛ղ բերել այդ կարմիր ճտերին:

Հակառակորդի պատժիչ ջոկատը մտնում է անտառ:

Անտառում լսվում են կրակոցի ձայներ, և քիչ անց պատժիչ ջոկատը վերադառնում է, իր հետ բերելով թևից վիրավորված հերոս պիոներին:

— Խլե՛լ փողկապը,— աղաղակում է բլինդաժի տանիքին կանգնած սպան:

Զինվորներից մեկը մոտենում է հերոս պիոներին, բայց ոչ մի կերպ չի կարողանում խլել նրանից փողկապը:

— Գնդակահարե՛լ,— փրփրում է սպան:

Հենց այդ ժամանակ անտառից թշնամիների վրա են հարձակվում պարտիզանները: Կարճատև մարտից հետո պարտության են մատնում նրանց և ազատում հերոս պիոներին:

— Դու դեռ երեխա ես,— հերոս պիոների մազերը շոյելով՝ ասում է պարտիզանական ջոկատի հրամանատարը,— ինչո՞ւ ես կյանքդ վտանգում:

— Որովհետև,— պատասխանում է հերոս պիոները,— չեմ ուզում, որ ջրերը արյան համ ունենան, որ ծաղիկները ունենան արյան գույն, որ աստղերը ռումբեր թվան: Ես միշտ սիրելու եմ երկնքի կապույտը ու միշտ հիշելու եմ փոքրիկ թմբկահարին:

Եվ երբ հերոս պիոները լռեց, Հանքավանի «Լուսաբաց» ճամբարի ամբողջ դրուժինան ծափերով ու հայրենասիրական երգերով ողջունեց 3-րդ ջոկատի ու նվագախմբի միացյալ ուժերով կազմակերպված պատերազմական այդ դրամատիկ դրվագների ցուցադրումը:

Մասնակիցներից ամենից ավելի տպավորություն թողեցին Դանիելը, Վահրամը, Սեդան, Սոֆիկը:

*ՄԱՔՍԻՄ ՍԱԿԱՆՅԱՆ*

*Դպրոցական «Կարմիր գիրք»*

# ԿԵՆԻ ՀԱՏԱՊՏՂԱՅԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Կենին կամ կարմրածառը ասեղնատերևավորների դասի կենազգիների ընտանիքի ներկայացուցիչ է: Այս ծառատեսակը հազարամյակներ առաջ լայնորեն տարածված է եղել Եվրոպայում և Կովկասում, սակայն աստիճանաբար ոչնչացել է անխնա վերաբերմունքի հետևանքով և ներկայումս կենու միայն հատուկենտ անտառակներ են մնացել: Այդ բույսի բնափայտից պատրաստում էին հռչակավոր կարմիր կահույքը, որը միջնադարում չափազանց բարձր էր գնահատվում: Բացի այդ, քանի որ կենու բնափայտը խիստ ներծծված է տարբեր խեժերով և ջրի մեջ չի փտում, օգտագործվում էր նաև նավաշինության մեջ: Այդ է պատճառը, որ մարդիկ անխնա ոչնչացնում էին կենիները:

Կենին մշտադալար ասեղնատերևավոր բույս է. Եվրոպայում 10—17, իսկ Հայաստանում 20—27 մետրի բարձրությամբ և բնի մինչև 1,5 մետր տրամագծով: Սաղարթը օվալա-գլանաձև է, արտաքուստ խիտ, հաճախ՝ բազմագագաթ: Ասեղնատերևները ընձյուղների վրա դասավորված են միակարգ՝ պարուրաձև:

Չափազանց դանդաղ է աճում: Կյանքի առաջին 4—6 տարում միջին տարեկան աճը 2—3 սմ է:

Պտուղները (կամ իգական կոները) վառ կարմրա

## Թևավոր խոսքեր

# ՇԱՐԺԵԼ ՄԵՌՅԱԼ ԿԵՏԻՑ

«Մեռյալ կետ» ասելով մեխանիկները հասկանում են մեքենայի մասերի այնպիսի վիճակ, երբ նա ինչ-որ մի պահի անշարժության է մատնվում, հակառակ ծայրերից այդտեղ ուժերը հավասարակշռվում են: Որպեսզի այդ անշարժացումը չլինի, օգտագործում են թափանիվները, որոնք պտտվում են իներցիայի ուժով և մեխանիզմը շարժում «մեռյալ կետից»:

Փոխաբերական իմաստով «մեռյալ կետ» արտահայտությունը նշանակում է անշարժացում, գործունեության դադար: «Շարժել մեռյալ կետից» կնշանակի ինչ-որ բան շարժման մեջ դնել, շարժել տեղից, հաղթահարել անշարժ վիճակը:

# ՍԵԶԱՄ, ԲԱՑՎԻ՛Ր

Արաբագետներն ասում են, թե չնայած այս արտահայտությունը վերցված է արաբական հեքիաթներից, բայց խիստ աղավաղված է: Արաբները չունեն «սեզամ» բառը: Նրանց լեգենդներում հիշատակվում է «Սիմ-սիմ-»ը, որն ունի փականքներ ու կողպեքներ բացելու հատկություն:

«Հազար ու մեկ գիշերներ» արաբական հեքիաթների ժողովածուի թարգմանիչները ճիշտ չեն վերարտադրել նաև այդ բացականչությունը: Այնուամենայնիվ, դա մեր խոսքի մեջ մտել է հենց այս ձևով և ըստացել անմատչելի մի տեղ թափանցելու, կամ անհասանելի նպատակին հասնելու նշանակություն: «Հերցոգուհին չէր ընդունում ոչ ոքի, բայց մենք ունեինք մի «սեզամ բացվի՛ր» հանձին կարդինալ Սպադայի հանձնարարական նամակի....»

## ԲԵՌԸ

### ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԻՐԱՍ

*Էշը առած ծանր բեռը,*
*Բարձրանում էր հակա լեռը:*

*Ճամփի կեսին տերը տնքաց,*
*Էշը դարձավ այսպես ասաց.*

*— Ծանր բեռը ես եմ տանում,*
*Տե՛ր իմ, դո՞ւ ես հոգոց հանում:*

Լույս է տեսնում 1926 թվականից

№ 8 օգոստոս 1977 թ.



ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՈՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Դ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 04378: Պատվեր 1468: Տպաքանակ՝ 52606: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 8/VIII 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ.

# ԱՆՁՐԵՎԻՑ ՀԵՏՈ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Ամռան անձրևից,
Անձրևից հետո,
Քաղաքն է նման քարե զամբյուղի,
Որը լցվում է ցողերով արծաթ
Եվ ծաղիկներով հեռավոր գյուղի:

Անձրևից հետո
Երկինքն է նման
Լվացած մաքուր, անծայր սավանի.
Ամպերում մաքուր, ամպերում փրփուր
Գույներն են խաղում ծիածանի:

Անձրևից հետո
Արևն է նման
Փոքրիկ աղջկա, փոքրիկ ու անփույթ,
Որը ուզում է քարե զամբյուղով
Քայլել երկնային ճամփեքով կապույտ:

Բայց ինչպե՞ս անել,
Բայց ինչպե՞ս պահել
Քարե զամբյուղը փոքրիկ ձեռքերով:
Ա՜յ թե ինձ համար մի բռնակ լիներ
Հյուսած ուռենու դալար ճյուղերով:

— Բռնակ կլինեմ, աղջի՛կ, քեզ համար,—
Ծիածանն ասաց:
Գույնզգույն բռնակ ճյուղերով դալար
Քարե զամբյուղին հիմա կամրանամ
Եվ մենք իրար հետ կընկնենք ճանապարհ:

Այդպես էլ եղավ, այդպես էլ եղավ...
Անձրևից հետո
Երկնքով մաքուր
Աղջիկն է քայլում քարե զամբյուղով՝
Բռնած գույնզգույն բռնակից ամուր:

Անձրևից հետո
Քաղաքն ի՞նչ գիտի,
Թե ուր է տանում արևը նրան,
Բայց հավատում է շողերին նրա,
Որ փայլփլում են ցողերի նման:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

ԻՆԴԵՔՍ 77806